# ՅԱՌԱՋ

"HARATCH,,
JOURNAL ARMÉNIEN PARAISSANT TROIS FOIS PAR SEMAINE
Directeur-Propriétaire: SCHAVARCH MISSAKIAN
Rédaction et Administration / Խմբագրութիւն եւ Վարչութիւն — 208 bis, Rue Lafayette PARIS (10e).
Հեռաձայն՝ Nord 57-82

| ԲԱԺՆԵԳԻՆ | Եռամսեայ | Վեցամսեայ | Տարեկան |
|---|---|---|---|
| Ֆրանսա և գաղութներ | 16 ֆր. | 35 ֆր. | 65 ֆր. |
| Անգլիա և » | — | 10 շ. | 20 շ. |
| Ամերիկա | — | 3 տ. | 5 տ. |
| Ուրիշ երկիրներ | — | 50 ֆր. | 90 ֆր. |

Հասցէի փոփոխութեան համար 1 ֆր. վճարել անհրաժեշտ է:

ՇԱԲԱԹ 20 ՆՈՅԵՄԲԵՐ 1925

On reçoit des annonces en français et en arménien.

Խմբագիր ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ
որուն անունին պէտք է ուղղել դրամական ղրկումները առաքում:

Ա. ՏԱՐԻ ԹԻՒ 48 — Կը հրատարակուի ԿԻՐԱԿԻ, ՉՈՐԵՔՇԱԲԹԻ և ՇԱԲԱԹ — ԳԻՆ 40 ՍԱՆԹԻՄ


ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

## ՊԱՏԿԵՐՆԵՐԸ ՑՈՅՑ ՏՈՒԱԾ ԱՏԵՆ

I

Տարօրինակ զուգադիպութեամբ մը, ճիշդ այն պահուն ուր Փարիզ կը համնէին Հայաստանի ՀՕԿի եւ Կարմիր Խաչի պատուիրակութիւնները, երկու թղթակցութիւններ ստացանք երկու հեռաւոր գաղութներէ, Քուպայէն եւ Մեքսիկայէն:

Թղթակցութիւնները հրատարակուած են այսօրուան թուով: Նկարդացէք եւ դատեցէք: Այդ երկու կարճ նամակները — եւ անոնց հետ հաղորդուած բերանացի տեղեկութիւնները — կը ներկայացնեն ողբերգութիւն մը որ իր նմանը չունի ժողովուրդներու պատմութեան մէջ: Անհաւասիկ բազմութիւններ, որոնք փախան սուրէն և հուրէն, թափառեցան կայանէ կայան, նետուեցան ամէնէն անմատչելի ափերը, եւ հիմա, երկու տարի յետոյ, կը դառնան ետ, խարխափ ձգելու համար դարձեալ օտար հողի վրայ, կամ իրենց մեկնած տեղը . . .:

Այդ անճար բազմութիւններուն մէջ շատեր կան որ Պուլկարիա, Ռումանիա, Յունաստան կամ Սուրիա ապաստաներ էին, առաջին անգամ: Չհաւնեցան այդ երկիրներուն, կամ, տեղական պայմաններուն ստիպման տակ, նախընտրեցին հեռանալ: Եւ որովհետեւ հայրենիքը անհանդուրժելի պայմաններ եւ խորհրդաւոր փեղկեր ունի, աւելորդ համարեցին այն կողմը նայիլ, եւ կարաւանը քշեցին աւելի հեռուն, դէպի անծանօթ հորիզոններ: Անոնք չեն յուսահատիր Ամերիկա մտնելու դժուարութիւններէն. բայց կը խրտչին Երեւանէն, իրենց երկրէն, որովհետեւ գիտեն որ, եթէ Մ. Նահանգները մէկ քաւարան ունի, Հայաստանը քանի մը տեսակով կը պարծենայ: Յետոյ, աստիճան մը հասկնալի է օտարին արգելքը. իսկ հայրենիքին չկամութիւնը՝ ընդվզեցուցիչ: Անշուշտ գաղթականի հոգեբանութիւնն ալ մեծ դեր ունի այս անվախճան թափառումներուն մէջ. բայց հիմնականը այս է, — հայրենիքը համրանքով մարդ կ'առնէ, զատելով, մաղելով կ'արձանագրէ, հրէի եւ հեթանոսի խտրութիւններ կը հաստատէ:

Թերթերը գրեցին թէ ՀՕԿի պատուիրակութիւնը առատ փաստաթուղթեր և պատկերներ բերած է, Հայաստանի մէջ կատարուած աշխատանքները ցուցադրելու համար: Մենք ալ «Յառաջ»ի անունով հարցումներ ուղղած ենք պատուիրակութեան, եւ պատասխանները պիտի հրատարակենք յաջորդ համարով: Ըսել կ'ուզենք որ, Երեւանի ներկայացուցիչները ամէն պատեհութիւն ունին, իրենց տեսակէտները պարզելու, հայրենիքին չարն ու բարին պատմելու:

Բայց, որպէս զի լրիւ կատարած ըլլան իրենց պաշտօնը, պայման է որ կարելի եղածին չափ լայն հայեացք մը ձգեն իրենց բոլորտիքը, իրենց պտտած գաղութներուն մէջ: Չի բաւեր միայն գովել եւ կոչեր ուղղել. պէտք է նաև լսել ինչ որ կը խորհին կարմիր գիծէն դուրս: Շարժանկարներ ցուցադրած եւ ծափեր խլած ատեն, պէտք է յիշեն որ հայրենիքէ զրկուած եւ անոր կարօտով տոչորուն, թափառական եւ հալածական ժողովուրդի մը առջեւ կը գտնուին: Իսկ այդ ժողովուրդը միայն պարտականութիւններ չունի, այլ եւ իրաւունքներ:

Անոր սիրտը կոտրած է ոչ միայն տիրող վարչաձեւէն, որ իրենը չէ, այլ և աւելի կենսական իրողութենէ մը: Ան կը նկատէ որ Երեւանը, իր իշխանութեամբ եւ մամուլով, չափազանց միակողմանի է եւ միականի, աւելի քան Թիֆլիսն ու Բագուն: Եւ իսկապէս, դուք ի՞նչ կը տեսնէք իբրեւ քաղաքական գիծ, «Հայկենդրգործկոմ»ի գործունէութեան մէջ: Ամբողջ բազմութիւններ ծովերէ ծով կ: նետուին, կ'երթան, կուգան, կը դառնան, կը ծիւրին ու կ'այլասերին: Քարերն անգամ լեզու ելած են այս պատկերին առջեւ, բայց Երեւանը կը մնայ անսասան, ինքն իր մէջ կծկուած, կը զբաղի միայն իրեն յանձնուած պարտէզին մշակութեամբ եւ բարեզարդութեամբ, այլ և պատասխանատուներ փնտռելով, կիրքեր սրելով եւ բացարձակ մութի մէջ պահելով երկրի ժողովուրդը՝ արտասահմանի անցուդարձերու մասին: (Յիշենք, անցողակի, Մարաշի եւ Սուրիոյ մասին տպուած սուտերը): Այն բոլոր եռանդն ու դրամը որ կը վատնուին Դաշնակցութիւնը վարկաբեկելու եւ թաղելու, եթէ յատկացնէին երկրին սահմանները ընդարձակելու, նոյն իսկ ներկայ Հայաստանի ամայի, անտէր կամ նօսրացած գիւղերուն մէջ գաղթականներ տեղաւորելու, — «Թշնամի»ն իրապէս կը տուժէր, բայց ժողովուրդը կ'օգտուէր: Տնտեսական - թուաբանական հաշիւները կրնան օգտակար ըլլալ սովորական ժամանակներ, բայց ոչ այն ճակատագրական շրջանին, երբ ամբողջ ժողովուրդի մը գոյութեան խնդիրը դրուած է:

Շ.

ՄԱՄՈՒԼ

### ՆՈՐԷՆ ՄՏԱՀՈԳ ԵՆ

Թուրք մամուլը նորէն մտահոգութեան մատնուած է եւ անդադար կը փչէ Հայերուն եւ Յոյներուն դէմ, անոնց առեւտրական եւ քաղաքական գործունէութեան առթիւ: Ինչպէս գրած ենք լուրերու բաժնին մէջ, կառավարութիւնը օրինագիծ մը պատրաստած է, թրքական ապրանքները պաշտպանելու համար: Այս առթիւ «Վագըթ» կը գրէ.—

«Թուրքիայէն փախած Յոյներն ու Հայերը, ինչպէս նաեւ փոխանակուած Յոյները, ամէն տեղ կ'աշխատին կեղծել մեր ներքին արտադրութիւնը, եւ ապօրինի մրցում մը ձեռնարկած են մեր ազգային ճարտարարուեստին դէմ: Թրքական զորգի, չամիչի, թուզի եւ շերամի հունտի արտածումը հետզհետէ կը նուազի, Յոյներուն և Հայերուն ապօրինի մրցակցութեան պատճառաւ: Եթէ այս վիճակը տեւէ, այսօրուան մեր վնասը վաղը կրնայ աւելի մեծ չափեր ստանալ:»

Թուրք թերթը կը պատմէ թէ հայ եւ յոյն մրցակիցները կը գործեն նոյն իսկ Թուրքիոյ մէջ: «Պէշիքթաշի մէջ շերամի հունտի տուփեր պատրաստելով, Յունաստան կը ղրկուին եւ հոն կը լեցուին ուրիշ հունտերով»: Եւ կ'առաջարկէ պայքարի ընդհանուր ծրագիր մը պատրաստել:

ՈՎ ՊԱՐՏՈՒԱԾ Է

Խօսելով Հին Յունաստանի պատգամաւորական ընտրութեանց վրայ, «Յուսաբեր» կը գրէ.—

«Ընտրուած են 51 երեսփոխաններ, որոնցմէ 19ը՝ Դաշնակցականներ, 10ը՝ Ռամկավարներ, 10ը՝ Հնչակեաններ, 10ը՝ Չէզոքներ և 2ը՝ Համայնավարներ: Այս խայտաբղէտ բանակը միացեալ ճակատ կազմած էր Դաշնակցութեան դէմ եւ ապարէգ իջած ընդհանուր ցանկով:»

Մեր պաշտօնակիցը այս առթիւ պարզելով ընտրութեանց ատեն սարքուած գռեհիկ խաղերը, մանաւանդ ներգաղթի իրաւունքին շահագործումը, զոր երեւան հանեցին պոլսական երկու թերթեր, «Նոր Լուր» եւ «Ժամանակ», կ'եզրակացնէ.—

«Դաշնակցութիւնը պահած է իր ընտրողներու քանակը եւ կորսնցուցած է մաս մը իր աթոռներէն՝ ընտրական օրէնքի անկատարութեան, խորհրդային դրամի ու նպաստալիքներու հետեւանքով, մնալով հանդերձ ամէնէն զօրաւոր հոսանքը Պատգամաւորական ժողովին մէջ:»

---

ՕՐ. ՀԱՅԿԱՆՈՅՇ ԹՈՐՈՍԵԱՆ վաղը, Շաբաթ իրիկուն պիտի երգէ «Մաթէն»ի անթելի կայանին մէջ:

ՕՐԸ ՕՐԻՆ

## ԿԱՑՈՒԹԻՒՆԸ ՄԻՇՏ ԱՆՈՐՈՇ

### «Եթէ Հայերը չէզոք չմնան, կը ջարդուին»

Փարիզի արաբ շրջանակներէն մեր քաղած տեղեկութեանց համաձայն, ապստամբական շարժումը կը ձգտի արաբ երկիրներու անկախութեան եւ կը ղեկավարուի Գահիրէի կեդրոնէն: 1920ի ամառը, երբ Էմիր Ֆէյսալ Զօր. Կուրոյի կողմէ Սուրիայէն վտարուեցաւ, Արաբները հասկցան թէ պատերազմի ատեն իրենց եղած խոստումները ի դերեւ կ'ելլէին, հետեւաբար եւ անհրաժեշտ էր կռիւ մղել՝ տիրանալու համար ազգային անկախութեան: Այս նպատակով հայրենասէր Սուրիացիներու, Լիբանանցիներու եւ Պաղեստինցիներու կողմէ Գահիրէի մէջ կազմուեցաւ «Սուրիա - Պաղեստինեան կոմիտէ» մը: Այս կոմիտէին ծրագիրն է Պաղեստինն ու Սուրիան միացնել անկախ վարչաձեւի տակ: Կոմիտէի ընդհ. քարտուղար - գործավարն է Նէճիպ Շիւքայիր պէյ (ծագումով Տիւրզի) որ ազդեցիկ դէմք մըն է Արաբներու մէջ, իսկ նախագահն է Եգիպտացի քրիստոնեայ մը՝ իշխան Հապիպ Լութֆուլլահ: Այս վերջինը մեծահարուստ է եւ փառամոլ: Հիճազի նախկին թագաւոր Հիւսէյինէն առած է էմիր տիտղոսը՝ իր հարստութեան շնորհիւ: Հիճազի դեսպան եղած է Հռոմի մէջ եւ նոյն կառավարութիւնը ներկայացուցած է ժընեվ՝ Ազգերու Դաշնակցութեան մէջ, անպաշտօն կերպով: Ասկէ զատ Երուսաղէմի մէջ Մուսա Քեազիմ փաշայի նախագահութեամբ ուրիշ կազմակերպութիւն մըն ալ կայ, բաղկացած իսլամ եւ քրիստոնեայ արաբներէ եւ որուն նպատակն է պայքար մղել Սիոնականութեան դէմ: Քեազիմ փաշա յաճախ այցելած է Լոնտոն եւ ծանօթ դէմք մըն է Ազգերու Դաշնակցութեան շրջանակներուն մէջ: Հրեաներուն դէմ ատելութիւնը ընդհանուր է արաբ երկիրներուն մէջ: Վերջին ամիսներուն, Տիւրզիներու ապստամբութեան վրայ, Դամասկոսի մէջ կազմուեցաւ «ժողովրդական կուսակցութիւն» մը, որուն նախագահն է Տօքթ. Ապտիւրրահման Շէհպէնտէր եւ քարտուղարը՝ երիտասարդ իրաւաբան Իհսան Շէրիֆ (Փարիզի համալսարանէն): Այս կուսակցութեան ղեկավարները աքսորուեցան: Գալով Սուրիոյ քրիստոնեաներուն, վերջին դէպքերը ցոյց տուին որ անոնք երկրի մեծամասնութեան շահերուն եւ բաղձանքին հակառակ կը գործեն եւ հոգատար պետութեան կողմը կը բռնեն. այս պարագան նոյնպէս զայրոյթ յառաջ բերած է արաբ հայրենասէրներու շրջանակին մէջ: ԵԹԷ ՍՈՒՐԻՈՅ ՀԱՅԵՐԸ ՉԷԶՈՔ ՄՆԱՆ, ՈԵՒԷ ՎՆԱՍ ՉԻ ՀԱՍՆԻՐ ԻՐԵՆՑ. ԻՍԿ ԵԹԷ ՀՈԳԱՏԱՐ ՊԵՏՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԸ ԲՌՆԵՆ, ԱՅՆ ԱՏԵՆ, ՑԱՒԱԼԻ Է ԸՍԵԼ, ԿԸ ՋԱՐԴՈՒԻՆ ԱՄԷՆ ԱՆԳԱՄ ՈՐ ԱՌԻԹ ԿԸ ՆԵՐԿԱՅԱՆԱՅ:

«Դամասկոսի ռմբակոծութիւնը գահավիժեց դէպքերը: Ապստամբական շարժման գլուխը անցան այնպիսի մարդեր, որոնք ոեւէ կապ չէին ունեցած յեղափոխական կազմակերպութեանց հետ, օրինակ՝ Նասիպ Պաքրին, որ այսօր կարեւոր թիւով կամաւորներ ունի իր հրամանին տակ: Այս երիտասարդը ինքզինք՝ երկրորդ Խալիֆա Ապուպէքիրէն սերած կը նկատէ, Դամասկոսի երեւելիներէն է եւ զեղխ կեանք կը վարէր այդ երկրին մէջ: Այժմ Պաքրի ինքզինքը Սուրիոյ անկախ կառավարութեան պետ հռչակած է, ինչ որ լաւ տպաւորութիւն չէ գործած արտասահմանի Արաբներուն մէջ, որոնք այդ պաշտօնին վրայ տեսնել կը փափաքէին աւելի արժանաւորները»:

Նէճտի եւ Հիճազի թագաւոր Իպնի Սուուտ քանի մը ամիս առաջ Տիւրզիներու ղեկավար Սուլթան էլ Աթրաշին պատուիրակ ղրկելով զինուորական աջակցութիւն առաջարկած էր արաբ ապստամբներուն: Այն ատեն պէտք չէր տեսնուած այս օժանդակութեան: Հիմա շարժումը ծաւալած եւ Ֆրանսացիներու ուժը աւելցած ըլլալով, Դամասկոսի ժողովրդական կուսակցութեան նախագահ Տօքթ. Ա. Շէհպէնտէր Մէքքէ գացած է՝ Իպնի Սուուտի աջակցութիւնը խնդրելու համար:

⁂ Սուրիոյ թերթերը կը գրեն թէ երկու հազարէ աւելի հրոսակներ, Պէտէվի, Տիւրզի կամ արաբ, փոքր խումբերու բաժնուած, կը թափառին Դամասկոսի շուրջը, ճամբորդներու վրայ կը յարձակին, կը թալանեն, կը սպաննեն:

Այս հրոսախումբերուն արշաւանքը արգիլելու համար, զինուորական իշխանութիւնը ամրութիւններ շինել տուած է քաղաքին շուրջը: Երբ այս ամրութիւնները աւարտին, ֆրանսական զօրքը պիտի քալէ աւազակախումբերուն վրայ, զանոնք բնաջինջ ընելու համար:

(Լուրերու շարունակութիւնը կարդալ դ. էջ)

